Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՜ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ·ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ,
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՅԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (36)

ՀԿ(բ) Կ ԿԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի,
ագիտացիայի և մամուլի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 5 (36)

ՀԿ (բ) ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ







# ԸՆԿ. ԻՎԱՆՈՎԻ ՆԱՄԱԿԸ ՑԵՎ ԸՆԿ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

## ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ

ԿՈՒՐՍԿԻ ՄԱՐԶԻ ՄԱՆՏՈՒՐՈՎՍԿԻ ՇՐՋԱՆԻ ՀԱՄԼԿՑԵՄ ՇՐՋԿՈՄԻ ՀԱՍ-ՏԻՔԱՑԻՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏ ԻՎԱՆ ՖԻ-ԼԻՊՈՎԻՉ *ԻՎԱՆՈՎԻՑ*:

Թանկագին ընկեր ՍՏԱԼԻՆ, թախան-ձագին խնդրում եմ պարզաբանել ինձ հե-տևյալ հարցը. մեզ մոտ՝ տեղերում, ա-սենք կոմյերիտմիության մարզկոմում եւ, յերկակի հասկացողություն կա մեր յերկ-րում սոցիալիզմի վերջնական հաղթանակի մասին, այսինքն, շփոթում են հակասու-թյունների առաջին խումբը՝ յերկրորդի հետ: Խորհրդային Միության մեջ սոցիա-

լիզմի քախտի մասին Ձեր աշխատություններում խոսվում ե յերկու խումբ հակասությունների մասին — ներքին և արտաքին:

Հակասությունների առաջին խմբի մասին հասկանալի յե, վոր մենք դրանք լուծել ենք — սոցիալիզմը յերկրի ներսում հաղթանակել ե:

Յես ուզում եմ պատասխան ստանալ հակասությունների յերկրորդ խմբի մասին, այսինքն սոցիալիզմի յերկրի ու կապիտալիզմի միջև յեղած հակասությունների: Դուք մատնանշում եք, վոր սոցիալիզմի վերջնական հաղթանակը նշանակում ե արտաքին հակասությունների լուծում, լիակատար ապահովություն ինտերվենցիայից, իսկ հետևապես կապիտալիզմի ռեստավրացիայից: Իսկ հակասությունների այդ խումբը լուծելի յե միայն բոլոր յերկրների բանվորների ջանքերով:

Այո, ընկեր ԼԵՆԻՆՆ ել սովորեցրել ե մեզ, վոր «վերջնականապես հաղթանակել կարելի յե միայն համաշխարհային մասշտաբով, միայն բոլոր յերկրների բանվորների համատեղ ջանքերով»:

Հաստիքային պրոպագանդիստների հա-



մար ՀամԼԿՅԸՄ մարզկոմում կազմակերպված սեմինարի ժամանակ, յես, հիմնվելով Ձեր աշխատությունների վրա, ասացի, վոր սոցիալիզմի վերջնական հաղթանակը կարող ե լինել համաշխարհային մասշտաբով, բայց մարզկոմի աշխատողները — Ուրոժենկոն (մարզկոմի առաջին քարտուղար) և Կազելկովը (պրոպագանդի գծով հրահանգիչ) իմ յելույթը վորակում են վորպես տրոցկիստական վոտնձգություն:

Յես սկսեցի նրանց համար քաղվածքներ կարդալ այդ հարցի վերաբերյալ Ձեր աշխատություններից, բայց Ուրոժենկոն ինձ առաջարկեց փակել յերեքհատորյակը, անելով այսպիսի արտահայտություն. թե՝ «ընկեր ՍՏԱԼԻՆՆ ասել ե 1926 թ., իսկ մենք արդեն ապրում ենք 1938 թ., այն ժամանակ մենք չունեյինք վերջնական հաղթանակ, իսկ այժմ ունենք և մենք այժմ վոչ մի դեպքում չպետք ե մտածենք ինտերվենցիայի ու ռեստավրացիայի մասին». այնուհետև նա ասում ե — «մենք այժմ ունենք սոցիալիզմի վերջնական հաղթանակ և ունենք լիակատար ապահովություն ինտերվենցիայից ու կապիտալիզմի ռեստավրացիայից»: Յեվ այդպես ինձ համարեցին

տրոցկիզմի աջակից, հանեցին պրոպագանդիստական աշխատանքից և դրեցին կոմյերիտմիության մեջ մնալու հարցը:

Խնդրում եմ, ընկեր ՍՏԱԼԻՆ, պարզաբանել — մենք ունե՞նք արդյոք սոցիալիզմի վերջնական հաղթանակ, թե առայժմ դեռ վոչ: Գուցե յես դեռ ժամանակակից լրացուցիչ նյութ չեմ գտել այդ հարցի վերաբերյալ, կապված ներկայիս փոփոխությունների հետ:

Յես նաև հակաբոլշևիկյան եմ համարում Ուրոժենկոյի այն հայտարարությունը, թե այդ հարցի վերաբերյալ ընկեր ՍՏԱԼԻՆԻ աշխատությունները մի փոքր հնացել են: Յեվ ճի՞շտ են վարվել արդյոք մարզկոմի աշխատողները, ինձ համարելով տրոցկիստ: Այդ ինձ համար չափազանց վշտալի յե ու վիրավորական:

Խնդրում եմ, ընկեր ՍՏԱԼԻՆ, մի մերժեք խնդիրս, պատասխանեցեք հետևյալ հասցեյով — Կուրսկի մարզի Մանտուրովսկի շրջան. առաջին Զասելսկի գ/խորհուրդ Իվան Ֆիլիպովիչ Իվանովին:

Ի. ԻՎԱՆՈՎ

18 հունվարի, 1938 թ.



# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԿ. ԻՎԱՆ ՖԻԼԻՊՈՎԻՉ ԻՎԱՆՈՎԻՆ

Դուք, իհարկե, իրավացի յեք, ընկ. Իվանով, իսկ ձեր գաղափարական հակառակորդները, այսինքն՝ ընկերներ Ուրոժենկոն և Կազելկովը — սխալ են:

Յեվ ահա թե ինչու:

Անտարակուսելի յե, վոր մեկ յերկրում, տվյալ դեպքում մեր յերկրում, սոցիալիզմի հաղթանակի հարցը — ունի ՅԵՐԿՈՒ ՏԱՐԲԵՐ կողմեր:

Մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի ԱՌԱՋԻՆ կողմն ընդգրկում է մեր յերկրի ներսում դասակարգերի փոխհարաբերությունների պրոբլեմը: Այդ — ՆԵՐՔԻՆ հարաբերությունների բնագավառն է: Կարո՞ղ է արդյոք մեր յերկրի բանվոր դասակարգը հաղթահարել մեր գյուղացիության հետ ունեցած հակասությունները և կարգավորել նրա հետ դաշինքը, համագործակցությունը: Կարո՞ղ է արդյոք մեր յերկրի բանվոր դասակարգը, դաշն կնքած մեր գյուղացիության հետ ջախջախել մեր յերկրի բուրժուազիային, խլել նրանից հո-

տրոցկիզմի աջակից, հանեցին պրոպագանդիստական աշխատանքից և դրեցին կոմյերիտմիության մեջ մնալու հարցը:

Խնդրում եմ, ընկեր ՍՏԱԼԻՆ, պարզաբանել — մենք ունե՞նք արդյոք սոցիալիզմի վերջնական հաղթանակ, թե առայժմ դեռ վոչ: Գուցե յես դեռ ժամանակակից լրացուցիչ նյութ չեմ գտել այդ հարցի վերաբերյալ, կապված ներկայիս փոփոխությունների հետ:

Յես նաև հակաբոլշևիկյան եմ համարում Ուրոժենկոյի այն հայտարարությունը, թե այդ հարցի վերաբերյալ ընկեր ՍՏԱԼԻՆԻ աշխատությունները մի փոքր հնացել են: Յեվ ճի՞շտ են վարվել արդյոք մարզկոմի աշխատողները, ինձ համարելով տրոցկիստ: Այդ ինձ համար չափազանց վշտալի յե ու վիրավորական:

Խնդրում եմ, ընկեր ՍՏԱԼԻՆ, մի մերժեք խնդիրս, պատասխանեցեք հետևյալ հասցեյով — Կուրսկի մարզի Մանտուրովսկի շրջան. առաջին Զասեյսկի գ/խորհուրդ Իվան Ֆիլիպովիչ Իվանովին:

Ի. ԻՎԱՆՈՎ

18 հունվարի, 1938 թ.



# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԿ. ԻՎԱՆ ՖԻԼԻՊՈՎԻՉ ԻՎԱՆՈՎԻՆ

Դուք, իհարկե, իրավացի յեք, ընկ. Իվանով, իսկ ձեր գաղափարական հակառակորդները, այսինքն՝ ընկերներ Ուրոժենկոն և Կացելկովը — սխալ են:

Յեվ ահա թե ինչու:

Անտարակուսելի յե, վոր մեկ յերկրում, տվյալ դեպքում մեր յերկրում, սոցիալիզմի հաղթանակի հարցը — ունի ՅԵՐԿՈՒ ՏԱՐԲԵՐ կողմեր:

Մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի ԱՌԱՋԻՆ կողմն ընդգրկում է մեր յերկրի ներսում դասակարգերի փոխհարաբերությունների պրոբլեմը: Այդ — ՆԵՐՔԻՆ հարաբերությունների բնագավառն է: Կարո՞ղ է արդյոք մեր յերկրի բանվոր դասակարգը հաղթահարել մեր գյուղացիության հետ ունեցած հակասությունները և կարգավորել նրա հետ դաշինքը, համագործակցությունը: Կարո՞ղ է արդյոք մեր յերկրի բանվոր դասակարգը, դաշն կնքած մեր գյուղացիության հետ ջախջախել մեր յերկրի բուրժուազիային, խլել նրանից հո-

դը, գործարանները, հանքերը և այլն և իր ուժերով կառուցել նոր անդասակարգ հասարակություն, լիակատար սոցիալիստական հասարակություն:

Սրանք են մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի ԱՌԱՋԻՆ կողմի հետ կապված պրոբլեմները:

Լենինիզմն այդ պրոբլեմներին պատասխանում է դրական կերպով: ԼԵՆԻՆԸ սովորեցնում է, որ «ՄԵՆՔ ՈՒՆԵՆՔ ԱՅՆ ԲՈԼՈՐԸ, ԻՆՉ ԱՆՀՐԱԺԵՇՏ Է ԼԻԱԿԱՏԱՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԱՄԱՐ»: Նշանակում է, մենք կարող ենք և պետք է սեփական ուժերով հաղթահարենք մեր բուրժուազիային ու կառուցենք սոցիալիստական հասարակություն: Տրոցկին, Զինովևը, Կամենևը, և այլ պարոնայք, վորոնք հետո դարձան ֆաշիզմի լրտեսներն ու գործակալները, ժխտում էին մեր յերկրում սոցիալիզմ կառուցելու հնարավորությունը, առանց այլ յերկրներում, կապիտալիստական յերկրներում սոցիալիստական հեղափոխության նախնական հաղթանակի: Այդ պարոնայք ըստ էության ուզում էին մեր յերկիրը շրջել հետ, դեպի բուրժուական զարգաց-



ման ուղին, իրենց նահանջողականությունը քողարկելով մյուս յերկրներում «հեղափոխության հաղթանակի» մասին կեղծ փաստարկումներով: Այդ մասին էլ հենց վիճում էր մեր կուսակցությունն այդ պարոնների հետ: Մեր յերկրի զարգացման հետագա ընթացքը ցույց տվեց, վոր կուսակցությունն իրավացի յեր, իսկ Տրոցկին և կոմպանիան սխալ էին: Վորովհետև այս ժամանակվա ընթացքում մենք արդեն կարողացանք լիկվիդացիայի յենթարկել մեր բուրժուազիային, յեղբայրական համագործակցություն հաստատել մեր գյուղացիության հետ և հիմնականում կառուցել սոցիալիստական հասարակությունը, չնայած մյուս յերկրներում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի բացակայությանը:

Այսպես է մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի ԱՌԱՋԻՆ կողմը:

Յես կարծում եմ, ընկ. Իվանով, վոր Ձեր վեճն ընկ. ընկ. Ուրոժենկոյի և Կոզելկովի հետ, վերաբերում է հարցի վոչ այս կողմին:

Մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի ՅԵՐԿՐՈՐԴ կողմն ընդգրկում է

մյուս երկրների հետ, կապիտալիստական երկրների հետ, մեր երկրի փոխհարաբերությունների պրոբլեմը, մյուս երկրների բուրժուազիայի հետ մեր երկրի բանվոր դասակարգի փոխհարաբերությունների պրոբլեմը: Այդ — ԱՐՏԱՔԻՆ, ՄԻՋԱԶԳԱՅԻՆ հարաբերությունների բնագավառն է: Կարո՞ղ է արդյոք մեկ երկրի հաղթանակած սոցիալիզմը, այնպիսի երկրի, որը իր շրջապատում ունի բազմաթիվ ուժեղ կապիտալիստական երկրներ, իրեն լիովին ապահովված համարել ռազմական ներխուժման (ինտերվենցիայի) վտանգից և, նշանակում է, մեր երկրում կապիտալիզմի վերականգնման փորձերից: Կարո՞ղ են արդյոք մեր բանվոր դասակարգը և մեր գյուղացիությունը սեփական ուժերով, առանց կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի լուրջ օգնության, հաղթահարել մյուս երկրների բուրժուազիային նույնպես, ինչպես նրանք հաղթահարեցին իրենց բուրժուազիային: Այլ կերպ ասած, կարելի՞ է արդյոք սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում համարել վերջնական, այսինքն, ազատ՝ ռազմական



հարձակման վտանգից և կապիտալիզմի վերականգնման փորձերից, նկատի ունենալով, որ սոցիալիզմի հաղթանակը կա միայն մեկ երկրում, իսկ կապիտալիստական շրջապատումը շարունակում է գոյություն ունենալ:

Սրանք են մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի ԵՐԿՐՈՐԴ կողմի հետ կապված պրոբլեմները:

Լենինիզմն այդ պրոբլեմներին պատասխանում է բացասական կերպով: Լենինիզմը սովորեցնում է, որ «սոցիալիզմի վերջնական հաղթանակը, բուրժուական հարաբերությունների ռեստավրացիայից լիակատար ապահովության իմաստով, հնարավոր է միայն միջազգային մասշտաբով» (տես ՀամԿ(բ)Կ 14-րդ կոնֆերանսի հայտնի բանաձևը): Այդ նշանակում է, որ միջազգային պրոլետարիատի լուրջ օգնությունը հանդիսանում է այն ուժը, առանց որի չի կարող լուծվել մեկ երկրում սոցիալիզմի վերջնական հաղթանակի խնդիրը: Այդ, իհարկե, չի նշանակում, որ

մենք՝ ինքներս․ պետք է նստենք ձեռքներս ծալած, սպասելով արտաքին օգնության։ Ընդհակառակը, միջազգային պրոլետարիատի օգնությունը պետք է միացված լինի մեր յերկրի պաշտպանությունն ուժեղացնելու, Կարմիր Բանակն ու Կարմիր Նավատորմն ուժեղացնելու, ռազմական հարձակման և բուրժուական հարաբերությունների վերականգնման փորձերի դեմ պայքարելու համար ամբողջ յերկիրը մոբիլիզացիայի յենթարկելու ուղղությամբ կատարվող մեր աշխատանքի հետ։

Ահա թե այդ մասին ինչ է ասում ԼԵՆԻՆԸ․

«Մենք ապրում ենք վոչ միայն պետության մեջ, այլ նաև ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԻՍՏԵՄՈՒՄ, և Խորհրդային Հանրապետության յերկարատև գոյությունը իմպերիալիստական պետությունների կողքին աներևակայելի յե։ Վերջիվերջո կամ մեկը, կամ մյուսը կհաղթի։ Իսկ մինչև վոր այդ



վերջը գա, մի շարք ամենասոսկալի ընդհարումներ Խորհրդային Հանրապետության և բուրժուական պետությունների միջև անխուսափելի յեն։ Այս նշանակում է, վոր տիրապետող դասակարգը, պրոլետարիատը, յեթե միայն նա ուզում է տիրապետել ու տիրապետի, պետք է ապացուցի այդ նաև իր ռազմական կազմակերպությամբ» (Հատոր 24, եջ՝ 122)։

Յեվ այնուհետև․

«Մենք շրջապատված ենք այնպիսի մարդկանցով, դասակարգերով, կառավարություններով, վորոնք բացահայտորեն ատելություն են արտահայտում դեպի մեզ։ Հարկավոր է հիշել, վոր ամեն մի արշավանք մեր դեմ միշտ մազից է կախված» (Հատ․ 27-րդ, եջ՝ 117)։

Ասված է սուր և խիստ, բայց ազնվորեն ու ճշմարտացի, առանց այլևայլության, ինչպես գիտեր ասել ԼԵՆԻՆԸ։

Այդ նախադրյալների հիման վրա, ՍՏԱԼԻՆԻ «Լենինիզմի հարցերում» ասված է․—

«Սոցիալիզմի վերջնական հաղթա-

նակը լիակատար ապահովության և ինտերվենցիայի փորձերից, իսկ այդ նշանակում է նաև ռեստավրացիայի փորձերից, վորովհետև ռեստավրացիայի վորևէ չափով լուրջ փորձ կարող է տեղի ունենալ դրսի լուրջ աջակցությամբ միայն, միջազգային կապիտալի աջակցությամբ միայն: Այս պատճառով բոլոր յերկրների բանվորների աջակցությունը մեր հեղափոխությանը, իսկ առավել ևս այդ բանվորների հաղթանակը թեկուզ մի քանի յերկրներում, անհրաժեշտ պայմանն է, վոր առաջին հաղթանակած յերկիրը լիապես ապահովված լինի ինտերվենցիայի ու ռեստավրացիայի փորձերից, անհրաժեշտ պայմանը սոցիալիզմի վերջնական հաղթանակի» («Լենինիզմի հարցերը», 1937 թ., էջ՝ 134, ռուս. հրատ.):

Ինչպես ծիծաղելի և հիմարություն կլիներ փակել աչքերը կապիտալիստական շրջապատման փաստի առաջ և կարծել, վոր մեր արտաքին թշնամիները, որինակ՝ ֆաշիստները, չեն փորձի առիթի դեպքում ռազմական հարձակում գործել ԽՍՀՄ-ի



վրա: Այդպես կարող են մտածել միայն կույր պարծենկոտները կամ թագնված թշնամիները, վորոնք ցանկանում են թմրեցնել ժողովրդին: Վոչ պակաս ծիծաղելի կլիներ ժխտել, վոր ռազմական ինտերվենցիայի ամենաափոքր հաջողության դեպքում ինտերվենտները կփորձեն իրենց գրաված շրջաններում քանդել խորհրդային կարգերը և վերականգնել բուրժուական կարգերը: Մի՞թե Դենիկինը կամ Կոլչակն իրենց գրաված շրջաններում չեյին վերականգնում բուրժուական կարգերը: Ինչո՞վ են ֆաշիստները լավ Դենիկինից կամ Կոլչակից: Ժխտել ռազմական ինտերվենցիայի և ռեստավրացիայի փորձերի վտանգը կապիտալիստական շրջապատման գոյության պայմաններում, կարող են միայն քյալլագյոզները կամ թագնված թշնամիները, վորոնք ցանկանում են պարծենկոտությամբ քողարկել իրենց թշնամությունը և ձգտում են դեմոբիլիզացիայի յենթարկել ժողովրդին: Բայց կարելի՞ ՛յե արդյոք սոցիալիզմի հաղթանակը մեկ յերկրում համարել վերջնական, յեթե այդ յերկիրն իր շուրջն ունի կապիտալիստական շրջապատում և յեթե նա լիովին ապահովված չէ ինտերվենցիայի

ու ռեստավրացիայի վտանգից: Պարզ է, վոր չի կարելի:

Այսպես է մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցը:

Դուրս է գալիս, վոր այդ հարցը պարունակում է յերկու տարբեր պրոբլեմներ — ա) մեր յերկրի ՆԵՐՔԻՆ հարաբերությունների պրոբլեմը, այսինքն՝ մեր բուրժուազիայի հաղթահարման և լիակատար սոցիալիզմի կառուցման պրոբլեմը, և բ) մեր յերկրի ԱՐՏԱՔԻՆ հարաբերությունների պրոբլեմը, այսինքն, մեր յերկիրը ռազմական ինտերվենցիայի ու ռեստավրացիայի վտանգներից լիովին ապահովելու պրոբլեմը: Առաջին պրոբլեմը մենք արդեն լուծել ենք, քանի վոր մեր բուրժուազիան արդեն լիկվիդացիայի յե յենթարկված և սոցիալիզմն արդեն կառուցված է հիմնականում: Այդ մեզանում կոչվում է սոցիալիզմի հաղթանակ, կամ ավելի ճիշտ, սոցիալիստական շինարարության հաղթանակ մեկ յերկրում: Մենք կկարողանայինք ասել, վոր այդ հաղթանակը վերջնական է, յեթե մեր յերկիրը գտնվեր կղզու վրա և յեթե նրա շուրջը չլինեյին բազմաթիվ այլ, կապիտալիստական



յերկրներ: Բայց քանի վոր մենք ապրում ենք վոչ թե կղզու վրա, այլ «պետությունների սիստեմում», վորոնց զգալի մասը թշնամաբար է վերաբերվում դեպի սոցիալիզմի յերկիրը, ստեղծելով ինտերվենցիայի ու ռեստավրացիայի վտանգ, ապա մենք բացե ի բաց ու ազնվորեն ասում ենք, վոր սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում դեռևս չի հանդիսանում վերջնական: Բայց դրանից հետեվում է, վոր յերկրորդ պրոբլեմն առայժմ լուծված չե և այն մենք դեռ պետք է լուծենք: Ավելին, յերկրորդ պրոբլեմն անհնարին է լուծել նույն այն կարգով, վորով լուծեցինք առաջին պրոբլեմը, այսինքն, հենց միայն մեր յերկրի սեփական ջանքերի միջոցով: Յերկրորդ պրոբլեմը կարելի յե լուծել միայն միջազգային պրոլետարիատի լուրջ ջանքերը մեր ամբողջ խորհրդային ժողովրդի ե՛լ ավելի լուրջ ջանքերի հետ միացնելու կարգով: Հարկավոր է ուժեղացնել և ամրապնդել ԽՍՀՄ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ պրոլետարական կապերը բուրժուական յերկրների բանվոր դասակարգի հետ. հարկավոր է կազմակերպել բուրժուական յերկրների բան-

վոր դասակարգի քաղաքական ոգնությունը մեր յերկրի բանվոր դասակարգին՝ մեր յերկրի վրա ռազմական հարձակում կատարվելու դեպքում, ինչպես նաև կազմակերպել մեր յերկրի բանվոր դասակարգի ըստ ամենայնի ոգնությունը բուրժուական յերկրների բանվոր դասակարգին. հարկավոր է ամեն կերպ ուժեղացնել ու ամրապնդել մեր Կարմիր Բանակը, Կարմիր Նավատորմը, Կարմիր Ավիացիան, Պաշը-Ավիաքիմը: Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը մոբիլիզացիոն պատրաստության վիճակում պահել ռազմական հարձակման վտանգի հանդեպ, վորպեսզի վոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների վոչ մի տեսակ փոկուսներ չկարողանան հանկարծակիի բերել մեզ...

Ձեր նամակից յերևում է, վոր ընկ. Ուրոժենկոն ունի այլ, վոչ բոլորովին լենինյան հայացքներ: Նա, բանից դուրս է գալիս, պնդում է, վոր «մենք այժմ ունենք սոցիալիզմի վերջնական հաղթանակ և ունենք լիակատար ապահովություն ինտերվենցիայից ու կապիտալիզմի ռեստավրացիայից»: Տարակույս չի կարող լինել, վոր ընկ. Ուրոժենկոն արմատապես սխալ է:



Ընկ. Ուրոժենկոյի այդպիսի պնդումը կարող է բացատրվել միայն շրջապատող իրականությունը չըմբռնելով և լենինիզմի տարրական դրույթները չիմանալով, կամ թե գոռոզամիտ յերիտասարդի դատարկ պարծենկոտությամբ: Յեթե մենք իսկապես «ունենք լիակատար ապահովություն ինտերվենցիայից ու կապիտալիզմի ռեստավրացիայից», ապա դրանից հետո մեզ արդյո՞ք հարկավոր են ուժեղ Կարմիր Բանակ, Կարմիր Նավատորմ, Կարմիր Ավիացիա, ուժեղ Պաշը-Ավիաքիմ, ինտերնացիոնալ պրոլետարական կապերի ուժեղացում և ամրապնդում: Ավելի լավ չի՞ լինի արդյոք, այն միլիարդներով դրամը, վոր ծախսվում է Կարմիր Բանակի ուժեղացման վրա, ծախսենք այլ կարիքների վրա, իսկ Կարմիր Բանակը կրճատենք մինչեվ մինիմումի, կամ նույնիսկ բոլորովին ցրենք: Այնպիսի մարդիկ, ինչպիսին է ընկ. Ուրոժենկոն, յեթե նրանք սուբյեկտիվորեն նույնիսկ նվիրված են մեր գործին, ոբյեկտիվորեն վտանգավոր են մեր գործի համար, վորովհետև նրանք իրենց պարծենկոտությամբ կամա թե ակամա (այդ միևնույն է) թմրեցնում են մեր ժողովրդին,

դեմոբիլիզացիայի յեն յենթարկում բանվորներին ու գյուղացիներին և ոգնում են թշնամիներին՝ հանկարծակիի բերելու մեզ միջազգային բարդությունների դեպքում:

Ինչ վերաբերում է նրան, ընկ. Իվանով, վոր Ձեզ, ինչպես յերևում է, «հանել են պրոպագանդիստական աշխատանքից և դրել են կոմյերիտմիության մեջ մնալու հարցը», ապա դրանից դուք չպետք է վախենաք: Յեթե ՀամԼԿՅԵՄ մարզկոմի մարդիկ իսկապես կուզեն նմանվել չեխովյան յենթասպա Պրիշիբեևին, կարելի յե չտարակուսել, վոր նրանք տանուլ կտան այդ գործում: Մեր յերկրում պրիշիբեևներին չեն սիրում:

Այժմ դուք կարող եք դատել, թե հնացե՞լ է արդյոք մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հարցի վերաբերյալ «Լենինիզմի հարցերը» գրքի հայտնի տեղը: Յես ինքս շատ կուզեյի, վոր այդ հնանար, վորպեսզի այլևս աշխարհի յերեսին չլինեյին այնպիսի անհաճելի բաներ, ինչպես կապիտալիստական շրջապատումը, ռազմական հարձակման վտանգը, կապիտալիզմի ռեստավրացիայի վտանգը և այլն: Բայց դըժ-



բախտաբար այդ անհաճելի բաները դեռևս շարունակում են գոյություն ունենալ:

Ի. ՍՏԱԼԻՆ

12 փետրվարի, 1938 թ.

«ՊՐԱՎԴԱ»

—

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՐԸ՝ ՄԱՐՏԻ 8-Ը

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԻ ՏԱԿ

«Հոդված 122. Կնոջը ՍՍՀՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում: Կանանց այդ իրավունքների իրականացման հնարավորությունն ապահովվում է կնոջը տղամարդուն հավասար իրավունք տալով աշխատանքի, աշխատանքի վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովագրության ու կրթության ասպարեզում, մոր ու մանկան շահերի պետական պահպանությամբ, կնոջ հղիու-



թյան ժամանակ արձակուրդ տալով՝ պահպանելով աշխատավարձը, ծննդարանների, մանկամսուրների, մանկապարտեզների լայն ցանցով»:

«Հոդված 137. Կանայք ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասար»:

(ՍՍՀՄ-ի Սահմանադրությունից):

Մարտի 8-ի օրը մեր յերկրում համաժողովրդական տոն է: ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ կուսակցության ղեկավարությամբ խորհրդային հերոս ժողովուրդը և հատկապես խորհրդային կանայք՝ վորպես սոցիալիզմի յերջանիկ քաղաքացիներ, ձեռք են բերել լիակատար ազատություն, վորը վառ կերպով արձանագրված է Ստալինյան մեծ Սահմանադրության վոսկեշող էջերում:

Մարտի 8-ը՝ կանանց միջազգային կոմունիստական օրը, մեր յերկրում անց է կացվում վորպես ՍՍՀՄ-ի կանանց հաղթանակների հաշվեհարդար: Կուլտուրական, ուրախ, յերջանիկ և ունևոր կյանքի օր, վորը պարգևել են ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ կուսակցությունն ու խորհրդային իշխանությունը:

Մարդկային հասարակության զարգացման պատմության մեջ հասարակական-

տնտեսական բոլոր ֆորմացիաներում կինը հալածված ու ճնշված է յեղել, տառապել է աղխտության ու խավարի ճիրաններում, ինչպես տիրող կարգերի կողմից, այնպես էլ ընտանիքում՝ ամուսնու կողմից: Այժմ էլ կապիտալիզմը պահպանում է այն օրենքները, որով կինը ստորացուցիչ կացության մեջ է գտնվում ընտանիքում:

Բավական է հիշատակել, որ Ֆրանսիայում կինը յենթարկված է ամուսնու իշխանությանը: Ֆրանսիական քաղաքացիական օրենսգրքի 213—314-րդ հոդվածներում արձանագրված է՝ ամուսնու իշխանությունը կնոջ նկատմամբ: Այդ օրենսգրքի 213-րդ հոդվածում ասվում է՝ «Ամուսինը պարտավոր է հովանավորություն ապահովել իր կնոջ համար, իսկ կինը պարտավոր է յենթարկվել ամուսնուն»: Նույն օրենսգրքի 215-րդ հոդվածում ասվում է «Կինը չի կարող դիմել դատարանին, առանց ամուսնու թույլտվության»: Ցարական քաղաքացիական օրենքների ժողովածվի 107-րդ հոդվածին ասում էր. «Կինը պարտավոր է հնազանդվել իր ամուսնուն, որպես ընտանիքի գլխավորի, սեր, հարգանք և անսահման հնազանդություն տածել դեպի նա, ամեն կերպ սիրաշահել և մտերմություն ցուցաբերել նրան, որպես տան տնտեսուհի»:



Ցարական օրենքների ժողովածվի 107-րդ հոդվածը, ինչպես և ֆրանսիական օրենքները հռչակում են՝ «ամուսինները պարտավոր են միասին ապրել, ուստի և խստիվ արգելվում է այն բոլոր գործողությունները, որոնք հանգում են ամուսինների ինքնագլուխ անջատմանը: Ամուսինը վերաբնակվելիս, ծառայության մտնելիս, կամ նրա բնակավայրի այլ փոփոխության դեպքում՝ կինը պարտավոր է հետևել նրան»:

Ճապոնիայում գոյություն ունեցող ռեժիմի պայմաններում, կնոջ իրավունքները, նրա արժանապատվությունը վոտնահարված են այն աստիճան, որ ամուսինն իրավունք ունի վաճառելու կնոջը, իսկ հայրն՝ աղջկանը: Միշտ և ամենուրեք կնոջ պարտականությունն է՝ հնազանդություն:

Ֆաշիստական Գերմանիայում, ֆաշիզմի լիդեր Հիտլերի պահանջով, գերմանացի կինը պետք է միմիայն տնտեսուհի լինի, ծառայի իր ամուսնու բոլոր տեսակի քմահաճույքներին և ուրիշ վոչինչ—խոհանոց, յերեխա և անկողին: Կնոջ նկատմամբ վոչ մարդկային այս վերաբերմունքը, ստոր միջոցները, գործադրվում են կապիտալիստական բոլոր յերկրներում:

Ի հակադրություն բուրժուական կար-

դերի դաժան ռեժիմի՝ ԽՍՀՄ-ում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ցարական կարգերի տապալման հետ միասին, որոնց, հողմացրիվ արավ կնոջ նկատմամբ բոլոր տեսակի ստրկական կապանքները։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ Հեղափոխությունը կնոջ համար ստեղծեց լիակատար ազատություն և հավասար իրավունք։ 1907 թվին, Շտուտգարտի միջազգային կոնգրեսում Վ. Ի. Լենինը դատապարտում էր Ավստրիական սոցիալ-դեմոկրատիայի օպորտունիստական պրակտիկան, որով նրանք պայքար մղելով տղամարդկանց ընտրական իրավունքների համար, կանանց ընտրական իրավունքների հարցը թողել էին հետին պլանի վրա։ Խորհրդային հերոսական ժողովուրդների անցած հեղափոխական ուղին պայծառ կերպով ցույց է տալիս, որ կանայք բուրժուա-կալվածատիրական ցարական կարգերի դեմ մղվող ամենօրյա պայքարում գնացել են բանվոր դասակարգի հետ կողք-կողքի։

1905 թվի հունվարի 9-ի արյունոտ կիրակի օրը բանվորուհիները իրենց ամուսինների և յեղբայրների հետ կողք-կողքի գնում էին դեպի ձմեռային պալատ, որ-



րոնց գլխավորեց սև ռեակցիան, և նրանց էլ կոտորեցին այնպես, ինչպես բանվորներին։

1914 թ. համաշխարհային մարդասպան պատերազմի և ցարիզմի դեմ կատարվող ագիտացիոն աշխատանքներում ջերմ մասնակցություն էին ցուցաբերում կանայք, և պատահականություն չէր, որ փետրվարյան հեղափոխությունն սկսվեց մարտի 8-ի կանանց դեմոնստրացիայով, որոնք գնում էին փողոց՝ «Կորչի պատերազմը», «Տվեք մեզ հաց» լոզունգներով։ Խորհրդային կանանց ազատագրման պայքարի անցած ուղին սերտորեն կապված է բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության հեղափոխական պայքարի հետ՝ լինի դա ցարական կարգերի տապալման, թե քաղաքացիական պատերազմի տարիներին՝ ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում։

Վերհիշելով խորհրդային կանանց մղած պայքարը՝ բանվոր դասակարգի անդուլ պայքարի հետ, որ մղում էին քաղաքացիական պատերազմի տարիներին Դենիկինի, Յուդենիչի, Կոլչակի, Վրանգելի և մյուս հակահեղափոխական բանդաների դեմ, բանվորական ու գյուղացիական պարտիզանական ջոկատներում կանայք ակտիվ

կերպով ոգնում էին իրենց ամուսիններին ու յեղբայրներին՝ վերջնականապես ջախջախելու ու լիկվիդացիայի յենթարկելու սպիտակ-գվարդիական, հակահեղափոխական ոկուպանտներին, անգլո-ֆրանսիական իմպերիալիստների կողմից մինչև ատամները զինված բանդաներին, ազատելով յերիտասարդ խորհրդային յերկիրը ներքին և արտաքին թշնամիներից, ավելի ցայտուն է յերևում կանանց դերը խորհրդային իշխանության ամրապնդման գործում:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակների արդյունքն է, վոր մեր հայրենիքի 170 միլիոնանոց ժողովուրդը տոնում է կանանց միջազգային կոմունիստական որը, վորպես հաղթանակած սոցիալիզմի յերջանիկ ժողովրդի ունևոր, բերկրալից կյանքի համաժողովրդական մի տոն:

Խորհրդային կնոջ ազատագրման համար մղած պայքարի փայլուն որինակով են վարակված բոլոր առաջավոր ու դեմոկրատիկ յերկրների կին աշխատավորները: Իսպանական աշխատավոր կանայք՝ համախմբված հակաֆաշիստական միացյալ ճակատի մեջ, իրենց յեղբայրների ու ամուսինների հետ,



անդուլ, հերոսական պայքար են մղում Մադրիդի արվարձաններում, Տերուելում, ընդդեմ գերմանական և իտալական ֆաշիզմի, հանուն դեմոկրատիայի, հանուն ազատ Իսպանիայի, հանուն խաղաղության և ԽՍՀՄ-ի պաշտպանության:

Դոլորես Իբարուրրիյի անունը բարձր է հնչում իսպանական հերոս ժողովրդի մեջ և ամբողջ աշխարհում: Նա կոչ է անում մինչև վերջին կաթիլ արյունը պայքարել հանուն ազատ, դեմոկրատական Իսպանիայի: «Ավելի լավ է կանգնած մեռնել, քան թե ծնկաչոք ապրել» (Դոլորես):

Մարտի 8-ին, կանանց միջազգային կոմունիստական որը, միջազգային հեղափոխական կանայք ընդդեմ պատերազմի հրձիգների՝ ֆաշիզմի, տրոցկիստական բուխարինյան-ռիկովյան ստոր մարդասպանների, կցուցադրեն իրենց ուժերը, պատրաստակամությունը, հանուն պայքարի ու հաղթանակի, և ջերմորեն կվողջունեն աշխարհի մեկ վեցերորդ մասի՝ խորհրդային յերջանիկ կանանց, վորոնք ապրում են ստալինյան մեծ դարաշրջանի սոցիալիստական կարգերում, վորտեղ աշխատանքը դարձել է պատվի, փառքի և հերոսության գործ:

# ՍՈՑԻԱԼԻԶՄՆ ԱՊԱՀՈՎԵՑ ԿՆՈՋ ՓԱՍՏԱԿԱՆ ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Խորհրդային կինը՝ ամենաերջանիկ կինն է ամբողջ աշխարհում: Խորհրդային կնոջ համար ստեղծված են փաստական ազատություն և իրավունքներ՝ պետական-տնտեսական, քաղաքական, կուլտուրական ու հասարակական կյանքում: ՍՍՀՄ-ի բանվորուհիներն ու կոլտնտեսուհիները հպարտ են նրանով, որ խորհրդային երկրում ոչնչացված է նրանց ստրկությունը, մինչև այժմ չտեսնված բարձրության է հասցված նրանց մարդկային արժանապատվությունը: Վլադիմիր Իլիչ Լենինը 1919 թվին գրել է.— «Ոչ մի դեմոկրատիկ կուսակցություն աշխարհումս, ամենից առաջավոր բուրժուական ոչ մի հանրապետության մեջ, տասնյակ տարիների ընթացքում, այդ տեսակետից չի արել անգամ հարյուրերորդ մասն այն բանի, որն արել ենք մենք մեր իշխանության առաջին իսկ տարին: Մենք բառիս բուն իմաստով, քարը քարի վրա չենք թողել կնոջ անիրա-



վահավասարության, ամուսնալուծության և այն պայմանավորող ստոր ձևականությունների, արտամուսնային երեխաները չճանաչելու, նրանց հայրերին փնտրելու և այլն ստոր օրենքներից, որոնց մնացորդները բազմաթիվ են բոլոր քաղաքակիրթ երկրներում ի խայտառակություն բուրժուազիայի և կապիտալիզմի»:

Եվ իրոք, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխությունն առաջին իսկ օրից ջարդ ու փշուր արավ ցարական բուրժուա-կալվածատիրական կարգերի բոլոր տեսակի կապանքները, որոնք ստեղծված էին դարեր շարունակ իրավազրկելու կնոջը քաղաքական-տնտեսական հասարակական կյանքում:

ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ կուսակցությունն անհաշտ ու անողոք պայքար ծավալելով դասակարգային թշնամիների դեմ, մարքսիզմ-լենինիզմի թշնամի հոսանքների դեմ, հանուն սոցիալիստական հասարակության կառուցմանը մեր երկրում, որտեղ իրականացված է կնոջ իսկական ազատությունը, որտեղ կինն ակտիվ մասնակից ու գործիչ է պետական-տնտեսական, քաղաքական կյանքում:

Ժողովուրդների առաջնորդ ընկ. Ստալինը ճակնդեղի դաշտերի հարվածային կոլտնտեսուհիների ընդունելության ժամանակ կնոջ դառն անցյալի մասին այսպես ասաց.—

«Առաջարև, յեթե մտածում ենք, թե ինչ եյին ներկայացնում կանայք առաջ, հին ժամանակ: Քանի դեռ կինն աղջիկ եր, նա համարվում եր աշխատավորներից այսպես ասած՝ վերջինը: Նա աշխատում եր հոր համար, աշխատում եր առանց ձեռքերը ծալելու և հայրը դեռ կշտամբում եր «յես քեզ կերակրում եմ»: Յերբ նա մարդու յեր գնում, աշխատում եր այնպես, ինչպես հարկադրում եր նրան աշխատել ամուսինը. և հենց ամուսինն էլ դարձյալ կշտամբում եր. «յես քեզ կերակրում եմ»:

Յեթե առաջ կինը գյուղում վերջինն եր աշխատավորներից, յեթե աշխատանքը նզովք եր անցյալում, ապա այժմ նա առաջիններից է, աշխատանքը նրա համար վոչ թե նզովք է, այլ փառքի ու պատվի գործ, վորովհետև այժմ կյանքը դարձել է ուրախ, կյանքը դարձել է յերջանիկ և խորհրդային կինն այդ ուրախ ու յերջանիկ կյանք կերտող հասարակության իրավահավասար անդամն է:



## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԿԻՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱԿՏԻՎ ՈՒԺՆ Ե

Լենին-Ստալինի կուսակցությունը յերբեք չի բաժանել ու չի բաժանում խորհրդային կանանց պայքարը բանվոր դասակարգի ընդհանուր պայքարից: Լենին-Ստալինի կուսակցությունն ու խորհրդային իշխանությունը տարել ու տանում են հսկայական աշխատանք կանանց սոցիալիստական պետության քաղաքական-տնտեսական, հասարակական – կուլտուրական աշխատանքների ղեկավարման մեջ ներգրավելու համար:

Ստալինյան հնգամյակների ընթացքում անվերադարձ կերպով հաղթանակել են կոլտնտեսային սոցիալիստական կարգերը ԽՍՀՄ-ում:

Սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում արմատական փոփոխություն մտցրեց կուլտուրայի, կենցաղի և հայացքների մեջ ու միլիոնավոր կանայք դուրս բերվեցին տնային ճորտությունից, ապահովվեց նրանց տնտեսական անկախությունը, բարձրացավ քաղաքի և գյուղի աշխատավոր կանանց քաղաքական մտահորիզոնը, առաջ յեկավ

արտադրական բարձր ենտուզիազմ: Իրագործված է Լենինյան այն պատգամը, որ մեր երկրում կինը պետք է ունենա հավասար իրավունք տղամարդու հետ ոչ միայն օրենքով, այլ և կյանքում: Ընկեր Ստալինը մեր կուսակցության 17-րդ համագումարում իր հաշվետու զեկուցման մեջ ասում է.

«Հարկավոր է նշել, որպես ուրախալի փաստ և որպես գյուղի կուլտուրականացման նշան՝ կոլտնտեսուհիների ակտիվության աճումը հասարակական-կազմակերպչական աշխատանքների բնագավառում: Օրինակ, հայտնի յե, որ կոլտնտեսուհիներից ներկայումս կոլտնտեսությունների նախագահներ են մոտ 6000 հոգի, կոլտնտեսությունների վարչությունների անդամներ՝ 60.000-ից ավելի, բրիգադավարներ՝ 28.000, օղակային կազմակերպիչներ՝ 100.000, կոլտնտեսական ապրանքային ֆերմաների վարիչներ՝ 9000, տրակտորիստներ՝ 7000 հոգի: Ինչ ասել կուզի որ այս տվյալները լրիվ չեն: Բայց անգամ այն քիչը, որ կա այս տվյալներում, բավականաչափ ցայտուն կերպով վկայում է գյուղի կուլտուրակա-



նության մեծ աճման մասին: Այդ հանգամանքը, ընկերներ, ունի հսկայական նշանակություն: Դա ունի հսկայական նշանակություն այն պատճառով, որ կանայք կազմում են մեր երկրի բնակչության կեսը: Նրանք կազմում են աշխատանքի հսկայական բանակ և նրանք կոչված են դաստիարակելու մեր երեխաներին, մեր ապագա սերունդը, այսինքն՝ մեր ապագան: Ահա թե ինչո՞ւ մենք չենք կարող թույլատրել, որ աշխատավորների այդ հսկայական բանակը քարշ տա իր գոյությունը խավարի և տգիտության մեջ: Ահա թե ինչու մենք պետք է ողջունենք աշխատավոր կանանց աճող հասարակական ակտիվությունը և նրանց՝ ղեկավար պոստերի առաջ քաշելը, որպես մեր կուլտուրականության աճման անկասկածելի նշան»:

Աճել ու աճում է արդյունաբերության մեջ աշխատող կանանց թիվը: Յեթե այն համեմատում ենք ցարական Ռուսաստանի ժամանակաշրջանի հետ, աճը չտեսնված չափերի յե հասնում:

1913 թ. ցարական Ռուսաստանում խոշոր արդյունաբերության մեջ աշխատում եյին 636 հազար կանայք, իսկ 1935 թ. խորհրդային կարգերում խոշոր արդյունա-

բերության մեջ ընդգրկված էին 2 միլիոն 563 հազար կին, իսկ ամբողջ ԽՍՀՄ-ի ժողովրդական տնտեսության մեջ՝ ավելի քան 7.933.000 կանայք, որը կազմում է ամբողջ բանվորության 33,2%-ը: Խորհրդային կուլտուրական առևտրի ամբողջ ցանցում ընդգրկված էին 282.000 կանայք, տարրական դպրոցների դասատուական կազմի 90%-ը, վոչ լրիվ միջնակարգ դպրոցների դասատուական կազմի 50%-ը և գիտության աշխատավորների, ասպիրանտների, գիտա-հետազոտական հիմնարկներում աշխատողների 26,9 տոկոսը: Այս թվերն այժմ ավելի քան աճել են: 1914 թվականին ցարական Ռուսաստանում կային 1919 բժշկուհիներ, իսկ 1935 թ. խորհրդային մեր հայրենիքն ուներ 40023 բժշկուհիներ, այլ կերպ ասած՝ Միության բժիշկների կեսը կանայք էին: Միմիայն առաջին հնգամյակի ընթացքում կանանց թիվը ժողովրդական տնտեսության մեջ ավելացավ ավելի քան 2 անգամ: 1929 թ. առ մեկն հունվարի, կանանց թիվը 3,304.000-ից 1933 թ. հասավ 6.908,000-ի: Մեր յերկրում անընդհատ աճում է կին աշխատավորների բանակը, ժողովրդական



տնտեսության մեջ յերկրորդ հնգամյակում՝ 1936 թվին հասավ 8.492.000-ի: 1929 թ. խոշոր արդյունաբերության մեջ աշխատում էին 939.000, իսկ 1936 թ. 2.908.000 կանայք, կամ ընդհանուր բանվորների թվի՝ 38,8 տոկոսը:

Յերկաթուղային տրանսպորտում 1929 թ. աշխատում էին 104.000 կանայք, իսկ 1936 թ. հասան 446.000-ի: Շինարարության վրա 1929 թ.՝ 64.000, իսկ 1936 թ. 402.000, կամ շինարարության աշխատողների ընդհանուր թվի 19,1%-ը:

Մեքենաշինարարական, մետաղագործական ձեռնարկներում, գործարաններում 1929 թ. կային 42.2 հազար կին աշխատողներ, իսկ առ մեկն հուլիսի 1936 թ. այդ նույն ճյուղերում կանայք 511,8 հազար հոգի էին, կամ 12 անգամ ավելի, քան 1929 թվին: 1928 թ. հետ համեմատած 1936 թ. լեռնային արդյունաբերության բանվորների կազմի զգալի մասը կանայք էին. այսպես՝ լեռնանյութերի արդյունաբերության մեջ կանայք 6.8%-ից հասան մինչև 26,9 տոկոսի, իսկ փայտամշակ-գործարաններում՝ 17,2%-ից 39%-ի, քիմիական արդյունաբերության մեջ՝

33,3%-ից 41,6%-ի, Տեքստիլ արդյունաբերության մեջ՝ 61,2%-ից՝ 72,2%-ի, Թղթի արդյունաբերության մեջ՝ 24,6%-ից 51,4%-ի:

1935 թ. ԽՍՀՄ-ում մետաղագործական ձեռնարկների արդյունաբերության մեջ կին աշխատողները կազմում եյին բանվորների ընդհանուր թվի 25%-ը, մինչդեռ, այդ նույն ժամանակաշրջանում մետաղագործական արդյունաբերության մեջ աշխատող բանվորների կազմում կանանց տոկոսն Անգլիայում 5.4-ից չեր անցնում, Իտալիայում 5,3%-ից, Ֆրանսիայում 3,2%-ից. Գերմանիայում 3%-ից, Ամերիկայում 3%-ից և այլն: Ինչպես տեսնում ենք, ԽՍՀՄ-ում կանանց թիվն արդյունաբերության հենց այս ճյուղում էլ բարձր է տասնյակ անգամ, քան վորև է կապիտալիստական պետության մեջ:

Խորհրդային յերկիրը միակ յերկիրն է, վորը լիովին պայմաններ է ստեղծել կանանց տնային նեղ շրջանակներից դուրս բերելու և մասնակից դարձնելու յերկրի քաղաքական-տնտեսական կյանքին: Մեր յերկիրը միակն է աշխարհում, վորտեղ վոչ մի տարբերություն չի դրվում տղամարդ-



կանց ու կանանց աշխատանքի և վարձատրության միջև: Մինչդեռ կապիտալիստական աշխարհում խոշոր տարբերություն կա կանանց ու տղամարդկանց աշխատանքի և աշխատավարձի մեջ: Այնտեղ կանանց աշխատանքը ցածր է գնահատվում: ԽՍՀՄ-ում կանայք հավասար կարգով աշխատում են ժողովրդական տնտեսության ամեն մի ճյուղում և հավասար չափով էլ վարձատրվում են:

Մեզ մոտ կանայք հնարավորություններ ունեն բարձրացնելու իրենց վորակը բարձրագույն մասնագիտական և հանրակրթական հաստատություններում, տեխնիկումներում, ինչպես նաև բարձրացնելու իրենց վորակն ըստ ցանկացած մասնագիտական ճյուղի՝ առանց արտադրությունից կտրվելու, վորովհետև մեզանում ստեղծված են բոլոր հնարավոր պայմանները ձրի կրթության, հանգստի ու աշխատանքի համար:

Խորհրդային կինը սոցիալիզմի յերկրի քաղաքական, տնտեսական-պետական ղեկավարման գործում մի խոշոր ուժ է: Բավական է ասել, վոր 1926 թ. քաղխորհրդների ընտրությունների շրջանում կա-

նանց ընտրական իրավունք ունեցողներից ընտրություններին մասնակցում էին 43%-ը՝ այն ժամանակ, երբ տղամարդկանց մասնակցությունն ընտրություններին հասնում էր 60%-ի: Իսկ երբ վերցնում ենք 1934-1935 թ. թ. քաղխորհրդի ընտրությունների արդյունքները, ապա կանանց մասնակցությունը այստեղ կազմում էր 90%: Նույնն է նաև գյուղում: Յեթե 1926 թ. գյուղխորհրդի ընտրությունների ընթացքում մասնակցում էին կանանց միայն 28%-ը, ապա 1934-1935 թ. թ. կանայք մասնակցում էին 80,3%-ով: Միաժամանակ պետք է նշել, որ բարձրացավ կին պատգամավորների թիվը քաղխորհրդներում ու գյուղխորհրդներում: Յեթե 1926 թ. գյուղխորհրդի անդամ կանայք խորհրդում կազմում էին 9,9%, ապա այն՝ 1934—1935 թ. թ. հասավ 26,6%-ի: Քաղաքներում քաղխորհրդի անդամ կանայք 1926 թ. կազմում էին խորհրդի անդամների 18,2%-ը, իսկ 1934-35 թ. թ. 30,4 տոկոսը:

Խորհուրդների Համամիութենական յերկրորդ համագումարում կին պատգամավորներ կային 58 հոգի, մինչդեռ խորհուրդ-



ների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարում, որտեղ քննարկվեց և ընդունվեց մեր դարաշրջանի ամենամեծ փաստաթուղթը՝ Ստալինյան մեծ Սահմանադրությունը, կին պատգամավորներ կային 419 հոգի: Ստալինյան Սահմանադրության հիման վրա 1937 թ. կատարված մեր յերկրի Գերագույն Խորհրդի ընտրությունները ցույց տվին, որ փակ (գաղտնի) հավասար, ընդհանուր և ուղղակի ընտրությունների արդյունքն այն է, որ ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի, խորհրդային պառլամենտի պատգամավորների 184 հոգին մեր արդյունաբերության ու սոցիալիստական դաշտերի, գիտության, արվեստի Փրոնտի լավագույն կանայք են: Այս փաստերը ցույց են տալիս, որ կինը ԽՍՀՄ-ում որպես քաղաքական ուժ իր ակտիվ, ջերմ մասնակցությունն է ցուցաբերում սոցիալիզմի կառուցման գործին, մեր պետության ղեկավարման գործին, թե իրականություն է դարձել Վ. Ի. Լենինի իմաստալից պահանջն այն մասին, որ ամեն մի խոհարարուհի պետք է յերկիր ղեկավարել իմանա:

Խորհրդային պառլամենտի կին պատգամա-

մավորների տեսակարար կշիռ մեծությունը հետեվանք է Լենինի-Ստալինի կուսակցության հետեվողական պայքարի՝ ընդդեմ սոցիալիզմի բոլոր թշնամիների՝ փաշիզմի, տրոցկիստական, բուխարինական-զինովևական բուրժուա-նացիոնալիստական բանդիտների: 1935 թվին Միության մեջ ավելի քան կես միլիոն կին սովորում եյին խորհրդային տեխնիկումներում ու ԲՈՒՀ-երում: Ինժեներա-տեխնիկական աշխատողների մեջ 1935 թ. 66.000-ից ավելին կանայք եյին:

Լենինյան-Ստալինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման արդյունքն է այն, որ մեր Միության ազգային հանրապետություններում աճել և աճում են կանանց քաղաքական ակտիվությունը, որոնք յերկարամյա տարիների բոլշեվիկյան ինտերնացիոնալ դաստիարակության շնորհիվ ազատագրվել են բուրժուա-կալվածատիրական կարգերի բռնակալական կապանքներից, հետամնացությունը, որոնք յերկար տարիներ արմատացել եյին Ուզբեկստանի, Տաջիկստանի, Թուրքմենստանի, Ադրբեջանի, Հայաստանի և ազգային մյուս հանրապետությունների կուլտուրայում և կենցաղում, որտեղ կանայք ապրում



եյին հետամնացության, ողբության ու խավարի մեջ, չադրաներով ընդարկված: Միմիայն խորհրդային իշխանությունը լիակատար ազատություն բերեց մեր յերկրի կանանց, բարձրացրեց նրանց այն աստիճան, որ այսոր խորհրդային կինը ջերմ սիրով ու հարգանքով է համակված հանդեպ ԽՍՀՄ-ի յեղբայրական ժողովուրդները, ինչպես նաև կապիտալի աշխարհում իրենց ազատագրման համար մարտնչող բազմամիլլիոն աշխատավոր կանանց նկատմամբ: Խորհրդային կանայք իրենց բարոյական ու նյութական օգնությունն են ցուցաբերում իսպանական հերոս կանանց, նրանց յերեխաներին: Մեր յերկրի կանայք բարձր պահած ստախանովյան շարժման դրոշը, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, որպես խիզախ հայրենասերներ, իրենց ամենօրյա գործնական աշխատանքներով մասնակցում են մեր յերկրի մարտունակության, նրա քաղաքական տնտեսական հետագա բարգավաճման մեծ գործին: ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի 184 կին պատգամավորները, որոնք վստահված են մեր հերոս ժողովրդի կողմից, Լենինի-Ստալինի

կուսակցության ղեկավարությամբ կկատարեն իրենց վրա դրված մարտական խնդիրները: Ստախանովյան համաժողովրդական շարժման մեջ իր պատվավոր տեղն ունի խորհրդային կինը: Ընկեր Ստալինը ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցության արտասանած իր ճառում ասաց. «Ստախանովյան շարժումը չի կարելի դիտել որպես բանվորների ու բանվորուհիների սովորական շարժում: Ստախանովյան շարժումը բանվորների ու բանվորուհիների մի այնպիսի շարժում է, որը մեր սոցիալիստական շինարարության պատմության մեջ կմտնի որպես նրա փառավոր էջերից մեկը»:

Խորհրդային կանայք բարձր խանդավառությամբ աշխատելով գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսական դաշտերում, անձնախընդրաց կերպով բարձրացնում են իրենց արտադրական ունակությունները, որոնք հանդես են գալիս որպես ակտիվ ու գործունյա մասնակիցներ սոցիալիստական մրցման ու հարվածայնության, բարձրագույն աստիճան՝ ստախանովյան շարժման գործում: Մենք



մեր երկրում ունենք տասնյակ ու հարյուր հազարավոր կանայք, որոնք աշխատանքի հերոսուհիներ են մեր լայնածավալ շինարարության բոլոր ֆրոնտներում: Բոլորին հայտնի են խորհրդային սքանչելի ստախանովական կանանց անունները՝ Դուսյա և Մարուսյա Վինոգրադովաները, 500-ական շարժման նախաձեռնող Մարիա Դեմչենկոն, տրակտորիստուհի Պաշա Անգելինան և մյուս անվանի կանայք, որոնք ստախանովյան աշխատանքի հերոսական օրինակներ են ցույց տալիս: Մեր արդյունաբերության մեջ աշխատող կանանցից Խորհրդային Միության շքանշաններով պարգևատրվել են 1033 հոգի, իսկ գյուղատնտեսության մեջ աշխատողներից՝ 783 հոգի: Այսպիսով, մինչև 1937 թ. հունվարի 15-ը Խորհրդային Միության շքանշաններով պարգևատրվել են 1816 կին: «Այսպիսի կանայք չեն եղել և չէին կարող լինել հին ժամանակ» (Ստալին):

Մեր երկրում ստախանովյան շարժումը, որին ակտիվորեն մասնակից են նաև խորհրդային կանայք, ջարդ ու փշուր արավ տեխնիկական հին նորմաները, ավեց ու տալիս է աշխատանքի արտադրողակա-

նության հրաշալի և չտեսնված ցուցանիշներ, վորովհետև ընկ. ընկ. Ստախանովը, Բուսիգինը, Սմետանինը, Կրիվոնոսը, Մարիա Դեմչենկոն, Վինոգրադովաները և շատ ու շատ ուրիշ մարդիկ, բանվորներ ու բանվորուհիներ, կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ լրիվին տիրապետելով իրենց գործի տեխնիկային, թամբել են այդ տեխնիկան և առաջ են քշում այն: Սրանք նոր, առաջավոր մարդիկ են՝ Խորհրդային Միության ժողովրդի անվանի մարդիկ, վորոնց շարքերն օրըստօրե խտացնում են տասնյակ ու հարյուր հազարավոր նորանոր ստախանովականներ:

Ընկեր Ստալինը ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցության իր արտասանած ճառում ասաց.— «Ստախանովյան շարժումը բանվորների ու բանվորուհիների մի այնպիսի շարժում է, վորը նպատակ է դրել հաղթահարել տեխնիկական այժմյան նորմաները, հաղթահարել գոյություն ունեցող նախագծային կարողությունները, հաղթահարել գոյություն ունեցող արտադրական պլաններն ու հաշվեկշիռները: Հաղթահարել, վորովհետև դրանք, հենց այդ նորմաներն ար-



դեն հնացել են մեր օրերի համար, մեր նոր մարդկանց համար: Այդ շարժումը խորտակում է տեխնիկայի վերաբերյալ հին հայացքները, խորտակում է տեխնիկական հին նորմաները, նախագծային հին կարողությունները, արտադրական հին պլանները և պահանջում է նոր, ավելի բարձր տեխնիքական նորմաներ, նախագծային կարողություններ, արտադրական պլաններ ստեղծել: Նա կոչված է հեղափոխություն կատարելու մեր արդյունաբերության մեջ: Այդ իսկ պատճառով, նա, ստախանովյան շարժումն իր հիմքում խորապես հեղափոխական է»:

Այսպես է բնորոշել մեր կուսակցության հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինը ստախանովյան շարժումը:

Վ. Ի. Լենինը 1919 թ. ասում էր «Աշխատանքի արտադրողականությունը, դա վերջին հաշվով ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակակարգի հաղթանակի համար: Կապիտալիզմն ստեղծեց ճորտատիրության ժամանակ աշխատանքի չտեսնված արտադրողականություն: Կապիտալիզմը կարելի յե վերջնականապես հաղթել ու վերջնականապես կհաղթվի

նրանով, որ սոցիալիզմը ստեղծի աշխատանքի նոր, շատ ավելի բարձր արտադրողականություն»։

«Կոմունիզմը կամավոր, գիտակից, միացյալ, առաջավոր տեխնիկան օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է ընդդեմ կապիտալիզմի»։

1930 թ. Վ. Ի. Լենինի լավագույն աշակերտ, մեր բոլորի պաշտելին, մեր մեծ առաջնորդ ընկ. Ստալինը կուսակցության 16-րդ համագումարում տված իր հաշվետու զեկուցման մեջ ասաց.

«Միմիայն կույրերը չեն տեսնում, որ մասսաների հոգեբանության մեջ ու նրանց վերաբերմունքի մեջ դեպի աշխատանքը տեղի յե ունեցել հսկայական բեկում, որն արմատապես փոխել է մեր գործարանների և ֆաբրիկաների կերպարանքը։ Մրցության մեջ ամենանշանավորն այն է, որ այդ արմատական հեղաշրջում է առաջացնում աշխատանքի նկատմամբ՝ մարդկանց հայացքների մեջ, որովհետև մրցությունն աշխատանքն անպատվաբեր և ծանր լծից, ինչպես համարվում էր նա առաջ, դարձնում է պատվի գործ, փառքի գործ,



արիության ու հերոսության գործ»։

Մեր յերկրի արժանավոր զավակները, Լենինի-Ստալինի կուսակցության աճեցրած մարդիկ ստախանովյան շարժման քաջարի մարտիկները, ի կատարումն Լենինի-Ստալինի այս դրույթների, տվեցին աշխատանքի արտադրողականության հրաշալի, չտեսնված նմուշներ, հետ թողնելով կապիտալիստական յերկրների բոլոր նորմաները։

Կոմունիստական կուսակցությունը և խորհրդային իշխանությունը հսկայական ուշադրություն են դարձնում կանանց կադրերին, սիստեմատիկաբար սովորեցնում են աշխատավոր կանանց լայն մասսաներին, բանվորուհիներին ու կոլտնտեսուհիներին, որպեսզի նրանք տիրապետեն ժամանակակից տեխնիկական գիտելիքները։

1936 թ. ԽՍՀՄ-ի մի շարք հիմնական արդյունաբերական ռայոններում կատարված ստուգումները բանվոր յերիտասարդության կուլտ-կենցաղային պայմանների ուսումնասիրության մասին ցույց տվեցին, որ պետական տեխմինիմումի գերազանց քննություններ տվողների մեծ

մասը կանայք են՝ հատկապես կոմյերիտուհիներ, ստախանովականներ․ Հետևյալ աղյուսակը ցույց է տալիս գերազանց քննությունների ընդհանուր արդյունքները.—

**Մեքենաշինարարական** արդյունաբերության մեջ տեխմինիմումի պետական քննությունները տվել են գերազանց

տղամարդիկ՝ 40%, կանայք 39%։
Մետալուրգիական արդյունաբերության մեջ տղամարդիկ՝ 50%, կանայք 52%
Քարածխային արդյունաբերության մեջ տղամարդիկ՝ 55%, կանայք 62%
Տեքստիլ արդյունաբերության մեջ տղամարդիկ 41%, կանայք 55%

Ընկ. Ստալինը 1935 թ. դեկտեմբերին առաջավոր կոմբայնավարների և կոմբայնավարուհիների խորհրդակցությանն արտասանած իր ճառում ասաց. «Հնում, մինչև հեղափոխությունը մեր երկրում տարեկան մոտավորապես 4 միլիարդ փութ հացահատիկ էր արտադրվում, այդ հացը բավականացնում էր, թե ոչ, այս ուրիշ հարց է։ Համենայն դեպս բոլորը գտնում



էին, որ բավականացնում է, քանի որ ամեն տարի մոտ 400-500 միլիոն փութ հացահատիկ էին արտահանում արտասահման։ Այսպես էր անցյալում։ Այլ բան է այժմ, մեր խորհրդային պայմաններում։ Ես արդեն ասացի, որ մենք պետք է այժմ արդեն պատրաստվենք այն բանին, որպեսզի մերձավորագույն ապագայում, մի 3–4 տարուց հետո, հացահատիկի տարեկան արտադրությունը հասցնենք 7–8 միլիարդ փթի»։

Այսօր մեր գյուղատնտեսության ֆրոնտի անվանի մարդիկ, կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները համառ պայքար են կազմակերպում հանուն մեր երկրին 7–8 միլիարդ փութ հացահատիկ տալու, ստալինյան առաջադրանքները կենսագործելու համար։ Խորհրդային կանանց հերոսական աշխատանքի հրաշալի ցուցանիշներն այդ բնագավառում վոգևորություն են ներշնչում ամենքին։

Մենք բոլորս իրազեկ յեղանք տնտեսավարների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի հրամանատարների կանանց հիանալի շարժմանը, որը հանդիսանում

է սոցիալիզմի հայրենիքի զավակների աշխույժ և նախաձեռնող աշխատանքը՝ պայքարելու համար կուլտուրայի արտադրության մեջ և կենցաղում: Բոլորս հիշում ենք, թե ինչպես 2—3 տարի առաջ մեր անմոռանալի ժողկոմ Սերգո Օրջոնիկիձեն ինչպիսի ջերմ հոգատարությամբ նախաձեռնեց ինժեներա-տեխնիկական աշխատողների կանանց շարժումը, որն իր արձագանքը գտավ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում՝ սննդի, թեթև, անտառային, տեղական արդյունաբերությունների, ինչպես նաև յերկաթուղային ու ջրային տրանսպորտի աշխատողների կանանց մեջ: Այդ շարժումը տարածվեց մեր անծայրածիր Խորհրդային հայրենիքում:

Խորհրդային մեծ յերկրի յերջանիկ կանանց են պատկանում բազմաթիվ նախաձեռնություններ՝ գիտության, արվեստի, կուլտուրայի, և սոցիալիստական շինարարության այլ աշխատանքների բնագավառներում: Կանայք աշխատանք են կազմակերպում գործարանների, հանքահորերի, գյուղական հասարակությունների հանրակացարաններում, կարմիր բանակային զո-



րամասերում, պիոներական ճամբարներում, կոլտնտեսական ակումբներում ու ֆերմաներում: Նրանք կարգապահության ու կուլտուրականության համար մղվող պայքարում օրինակներ են ցույց տալիս: Նրանք մեծ աշխատանք են կատարում մանուկների դաստիարակության գործում: Դրա հետ մեկտեղ մեր չքնաղ հայրենիքի կանայք բարձրացնում են իրենց մարտական պատրաստականությունը, ուսումնասիրում են զինվորական գործը, ռազմական տեխնիկան և ամեն րոպե պատրաստ են վորպես մեր մեծ յերկրի արժանավոր դուստրեր՝ պաշտպանելու խորհրդային հայրենիքի յուրաքանչյուր թիզ հողը:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԿԻՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Արևելքում և Արևմուտքում ֆաշիստ հրձիգները սկսել են մարդասպան պատերազմը: Իտալա-գերմանական, գերմանա-ճապոնական ֆաշիստները աշխատում են ստրկացնել իսպանական ու չինական հերոս ժողովուրդներին: Խորհրդային հասարակայնությունը յերբեք չի կարող անտարբեր դիտել արտաքին աշխարհում տիրող

պատերազմի ֆաշիստ հրձիգների այդ թալանչիական արարքները։ ԽՍՀՄ հաղթանակած սոցիալիստական յերկիրը պահանջում է և՛ ավելի մասսայական մոբիլիզացիոն վիճակում պահել մեր հերոս ժողովրդին, վորը Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ 20 տարի առաջ տապալեց, հիմնահատակ արավ ցարական, բուրժուա-կալվածատիրական կարգերը, յերկիրը մաքրեց բոլոր տեսակի հակահեղափոխական ինտերվենտներից և ստեղծեց սոցիալիստական հասարակակարգ։ Այդ նույն ժողովուրդը, նրա կազմակերպված Կարմիր Բանակը, Լենինի-Ստալինի կուսակցության դրոշի տակ դեռ կշպրտի, ջախջախիչ հարված կհասցնի բոլոր տեսակի թշնամիների, գերմանա — ճապոնական ֆաշիստների վոտնձգություններին, մինչև իրենց վերջին կաթիլ արյունը կպաշտպանի խորհրդային հայրենիքի սահմանները։ Մեր յերկրի պաշտպանության գործում խորհրդային կանայք հսկայական աշխատանք են կատարել։ Պաշը-Ավիաքիմի կազմակերպությունների մեջ ընդգրկված են մեկ ու կես միլիոն կին, ինչպես նաև Կարմիր Խաչի ջոկատներում, ֆիզկուլտուրայի



զանազան խմբակներում, վորտեղ ընդգրկված են 2 միլիոն կանայք, վորոնցից 1936 թ. սկզբին ֆիզկուլտուրայի նորմաները հանձնել են 400.000 հոգի։ Ամենքին քաջ հայտնի յեն խորհրդային կանանց համարձակությունը, խիզախությունը և նրանց տված ռեկորդները։ Մեր յերկրի կանայք ցույց են տալիս օրինակելի արդյունքներ ռազմական գիտելիքների յուրացման գործում։ Նրանք մասնակցում են բազմաթիվ եքսկուրսիաներին, արշավանքներին, բարձրանում են լեռնային բարձրություններ և այլն։ Միայն 1935 թ. դեպի Կովկաս հեռավոր ճանապարհորդությանը մասնակցեցին 2120 կին։ Ամենուրեք բարձր խանդավառությամբ խորհրդային կանայք ուսումնասիրում են ռազմական գործը, մարզվում են ռազմական եքսկուրսիաներում, բարձրացնում են իրենց մարտունակությունը մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար։ Բազմաթիվ յերիտասարդ կանայք վոգեշնչված մեր յերկրի հերոս օդաչուների քաջագործություններով, սովորում են օդաչուական դպրոցներում, կարճ ժամանակամիջոցում յերկրին 150.000 օդաչու տալու համար։ Այժմ մեր

գործարաններում, ֆաբրիկներում, հիմնարկ-ձեռնարկներում կանայք առանց արտադրությունից կտրվելու սովորում են ուսանողական և պարաշյուտիստների դասընթացներում: Բանվորուհիները, կոլտնտեսուհիները, անգամ տնտեսուհիներն ակտիվ կերպով պատրաստվում են հակաօդային պաշտպանության խմբակներում:

Վերջին յերկու տարիների ընթացքում 20.000 կին, կարմիր բանակային աներում և զորամասերում, ստացել են միջնակարգ կրթություն: Հրամկազմի 10.000 կանայք մասնակցում են քաղխմբակներին: Հրամկազմի կանայք ռազմական զանազան մասնագիտական ճյուղերում պատրաստվում են իսկական մարտիկներ դառնալու: Նրանցից 30.000 հոգի ստացել են ռազմական հատուկ կրթություն: Մոսկվայի, Հյուսիսային Կովկասի, Միջին Ասիայի ռազմական շրջանների հրամկազմի կանանցից 1935-1936 թ. թ. դեպի Կազբեկի և Էլբրուսի գագաթները կատարած հերոսական արշավանքին մասնակցել են 6000 հոգի: Այսպես է ընթանում խորհրդային կանանց պայքարն ու հաղթանակը սոցիալիզմի յերկրում: Սոցիալիզմի անվերադարձ հաղ-



թանակը մեր յերկրում լիակատար ազատություն բերեց խորհրդային յերջանիկ կանանց, վորոնք այսոր իրենց անձնվեր աշխատանքով ոգնում են իրենց ամուսիններին, յեղբայրներին և զավակներին՝ առորյա տնտեսական ու քաղաքական աշխատանքներում, ե՛լ ավելի համախմբվելով Լենինի-Ստալինի կուսակցության դրոշի տակ, հանուն սոցիալիզմի նորանոր հաղթանակների:



